Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ- ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11 (42)

Հայկական ԽՍՀ. ԿԳ.Կ. հրատարակչություն—
«Խորհրդ. Հայաստան»

ԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 11 (42)

Հայկական ԽՍՀ ԿԳԿ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ— 1938



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

---

Ժամ. պատ. խմբագիր՝ Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Պատ. խմբագրի տեղակալ՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Սրբագրիչ՝ ԱՆԴՐ. ԲԱԼԱԲԱՆՅԱՆ 6

Գլավլիտի լիազոր՝ ՅԵ. 6615

Ստորագրված է տպագրության 2 հունիսի 1938 թ.

«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ, ՅԵՐԵՎԱՆ



# ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԵԾ ՄԻՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ԲՈԼՈՐ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐՈՒՄ, ՀԱՆՔԵՐՈՒՄ, ԿՈԼԵԿՏԻՎ ՈՒ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՈՒ ԳԻՏԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐՆ ԻՐԵՆՑ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԱՌԱՋԻՆ ԹԵԿՆԱԾՈՒ ԱՌԱՋԱԴՐԵՑԻՆ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ ՅԵՎ ՆՐԱ ՄԱՐՏԱԿԱՆ ԶԻՆԱԿԻՑՆԵՐԻՆ:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐՆ ԻՐԵՆՑ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐՈՒՄ, ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԱՌԱՋԻՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ ԱՌԱՋԱԴՐԵՑԻՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊՐՈ-

ԼԵՏԱՐԻԱՏԻ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴ, ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՅԱՆՔԻ ՈՒ ՅԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ՓԱՐՈՍ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ ՅԵՎ ՆՐԱ ՄԱՐՏԱԿԱՆ ԶԻՆԱԿԻՑՆԵՐԻՆ:

ՀԱՅ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆ ՈՐՆ ՈՐԻՆ, ԺԱՄ ԱՌ ԺԱՄ, ՍՐՏԻ ԱՆՀՈՒՆ ԲԵՐԿՐԱՆՔՈՎ ՍՊԱՍՈՒՄ ԵՐ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻ ՅԵՎ ՆՐԱ ԶԻՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅԱՆԸ՝ ՔՎԵԱՐԿՎԵԼՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ-ՈՒՄ, ՎՈՐՊԵՍ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ:

ԲՈԼՈՐԸ, ՅԵ՛Վ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ, ՅԵ՛Վ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԸ, ՅԵ՛Վ ԻՆՏԵԼԻԳԵՆՏՆԵՐԸ, ՅԵ՛Վ ՈՒՍԱՆՈՂՆԵՐԸ, ՅԵՐԻՏԱՍԱՐԴ, ԹԵ ԾԵՐ, ՄԻՅԵՎՆՈՒՅՆ ԲԱՆՆ ԵՅԻՆ ՄՏԱԾՈՒՄ, ԱՄԵՆՈՒՐ ՄԻ ՄԻՏՔ ԵՐ ԻՇԽՈՒՄ,— ՅԵՐԱՆԻ, ՀԱԶԱՐ ՅԵՐԱՆԻ ՄԵԶ, ՅԵԹԵ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԸ ՅԵՎ ՆՐԱ ԶԻՆԱԿԻՑՆԵՐԸ ՀԱՄԱՁԱՅՆՎԵՆ ՔՎԵԱՐԿՎԵԼ, ՎՈՐՊԵՍ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ-Ի ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ: ԱՅՍ ՄԻՏՔԸ ՀՐՃՎԱՆՔ ՅԵՎ ԱՆՆԿԱՐԱԳՐԵԼԻ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆ ԵՐ ՊԱՏՃԱՌՈՒՄ ԲՈԼՈՐԻՆ:



1938 Թ. ՄԱՅԻՍԻ 11-ԻՆ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԸ ՅԵՎ ՆՐԱ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԶԻՆԱԿԻՑ ԸՆԿԵՐ ՄՈԼՈՏՈՎԸ ՀԱՄԱՁԱՅՆՎԵՑԻՆ ՔՎԵԱՐԿՎԵԼ ՎՐԱՑԱԿԱՆ ԽՍՀ-ՈՒՄ, ՎՈՐՊԵՍ ՎՐԱՑԱԿԱՆ ԽՍՀ-Ի ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ: ՀՐՃՎԱՆՔԸ ՀԱՄԱԿԵՑ ՎՐԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆԸ: ՎՐԱՑ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ ԲԵՐԿՐԱՆՔ ԵՆ ԱՊՐՈՒՄ ԽՍՀՄ-Ի ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ, ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ: ՎՐԱՍՏԱՆԻՆ, ՎՐԱՑ ԺՈՂՈՎՐԴԻՆ, ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԴԱՐԱՎՈՐ ՅԵՂԲՈՐԸ, ՄԵԾ ՊԱՏԻՎ ՎԻՃԱԿՎԵՑ: ՎՈՐՊԻ՛ՍԻ ԲԵՐԿՐԱՆՔ, ՎՈՐՊԻ՛ՍԻ ՅԵՐՋԱՆԿՈՒԹՅՈՒՆ... ԶԱՅՆ ՏԱԼ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ, ՆՐԱ ՄԱՐՏԱԿԱՆ ԶԻՆԱԿԻՑ ԸՆԿԵՐ ՄՈԼՈՏՈՎԻՆ, ՄԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԱՄԵՆԱՄԵԾ ՄԱՐԴԿԱՆՑ:

1938 Թ. ՄԱՅԻՍԻ 14-ԻՆ ՄԵԾ ՊԱՏՎԻ ԱՐԺԱՆԱՑԱՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ: ԱՅԴ ՕՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎՈՂՋ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹՅԱՆ ՈՒ ԽՆԴՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԿԱԼԻՑ ՅԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ՕՐ ԴԱՐՁԱՎ: ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՄԵՆԱՄՈՏ ԲԱՐԵԿԱՄ

ՀԱՆՃԱՐԵՂ ՍՏԱԼԻՆՆ ԻՐ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ ՏՎԵՑ ՔՎԵԱՐԿՎԵԼՈՒ ՅԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՌԱՅՈՆԻ № 1 ԸՆՏՐԱԿԱՆ ՈԿՐՈՒԳՈՒՄ: ՆՐԱ ՄԱՐՏԱԿԱՆ ԶԻՆԱԿԻՑ, ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՐԺԱՆԱՎՈՐ ԶԱՎԱԿ ԸՆԿԵՐ ՄԻԿՈՅԱՆՆ ԻՐ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ ՏՎԵՑ ՔՎԵԱՐԿՎԵԼՈՒ ՅԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՌԱՅՈՆԻ № 9 ԸՆՏՐԱԿԱՆ ՈԿՐՈՒԳՈՒՄ: ԴՐԱՆԻՑ ՅԵՐԿՈՒ ՈՐ ՀԵՏՈ, ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴՈՒՄ, ՎՈՐՊԵՍ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒ ՔՎԵԱՐԿՎԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԻՐ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ ՏՎԵՑ ՄԵԾԱՀԱՆՃԱՐ ՍՏԱԼԻՆԻ ԱՄԵՆԱՄԵՐՁԱՎՈՐ ԶԻՆԱԿԻՑ, ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐ ԸՆԿ. ՄՈԼՈՏՈՎԸ:

ՀՐՃՎԱՆՔԻ ՅԵՎ ՈՒՐԱԽՈՒԹՅԱՆ, ԿՅԱՆՔԻ ՈՒ ԲԵՐԿՐԱՆՔԻ ՏՈՆ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ: ԱՎԵԼԻ ՄԵԾ ՊԱՏԻՎ, ՔԱՆ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ ՅԵՎ ՆՐԱ ՄԵՐՁԱՎՈՐ ԶԻՆԱԿԻՑՆԵՐ՝ ԸՆԿԵՐՆԵՐ ՄՈԼՈՏՈՎԻՆ ՈՒ ՄԻԿՈՅԱՆԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀԸՐԴՈՒՄ ԸՆՏՐՎԵԼՆ Է, ՉԿԱ ՀԱՅ ԺՈՂՈՎԸՐԴԻ ՀԱՄԱՐ:



ԸՆԿԵՐՆԵՐ ՍՏԱԼԻՆԸ ՅԵՎ ՄՈԼՈՏՈՎԸ ԻՐԵՆՑ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆՆ ԵՆ *ՏՎԵԼ ՔՎԵԱՐԿՎԵԼՈՒ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵ*ՐՈՒՄ, ՎՈՐՊԵՍ ԱՅԴ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ: ԽՈՐՀԸՐԴԱՅԻՆ ՄԵԾ ՄԻՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ՑՆԾՈՒԹՅՈՒՆ ՈՒ ԲԵՐԿՐԱՆՔ ԵՆ ԱՊՐՈՒՄ: ՆՐԱՆՑ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՏԱՐՎԱԾ Է: ՄԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԱՄԵՆԱՄԵԾ ՄԱՐԴԻԿ ՀԱՄԱՁԱՅՆՎԵԼ ԵՆ ՔՎԵԱՐԿՎԵԼ ՆՐԱՆՑ ՄՈՏ, ՎՈՐՊԵՍ ՆՐԱՆՑ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ:

ՀԱՅ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ՀՈՒՆԻՍԻ 12-ԻՆ ԴԵՊԻ ՔՎԵԱՏՈՒՓԵՐԸ ԿԳՆԱ ՁԱՅՆ ՏԱԼՈՒ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ, ՆՐԱ ՄԱՐՏԱԿԱՆ ԶԻՆԱԿԻՑՆԵՐ՝ ԸՆԿԵՐՆԵՐ ՄՈԼՈՏՈՎԻՆ ՅԵՎ ՄԻԿՈՅԱՆԻՆ, ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՅԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻՆ:

ՄԵՐ ՁԱՅՆԸ ՏԱԼՈՎ ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ
ՅԵՎ ՆՐԱ ՄԱՐՏԱԿԱՆ ԶԻՆԱԿԻՑՆԵՐ՝ ԸՆ-
ԿԵՐՆԵՐ ՄՈԼՈՏՈՎԻՆ ՅԵՎ ՄԻԿՈՅԱՆԻՆ,
ՄԵՐ ՁԱՅՆԸ ՏԱԼԻՍ ԵՆՔ ՄԵՐ ՅԵՐՋԱՆԻԿ
ԿՅԱՆՔԻ ՀԱՄԱՐ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՍՏԱ-
ԼԻՆՅԱՆ ՅԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ:

ՄԵՐ ՁԱՅՆԸ ՏԱԼԻՍ ԵՆՔ ՄԵԾ
ՍՏԱԼԻՆԻՆ, ՆՐԱ ԶԻՆԱԿԻՑՆԵՐԻՆ, ՎՈ-
ՐՈՎՀԵՏԵՎ ԱՌԱՆՑ ՄԵԾԱՀԱՆՃԱՐ ՍՏԱ-
ԼԻՆԻ, ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՉԵՐ ԳՏՆԻ ԻՐ
ՓՐԿՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆ, ԻՐ ՅԵՐՋԱՆԿՈՒ-
ԹՅԱՆ ՈՒՂԻՆ: ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱԽՏԸ
ԿԱՊՎԱԾ Ե ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ԱՆՎԱՆ ՀԵՏ:
ՉԵ՞ ՎՈՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՄԵՆԱՎՈԽԵ-
ՐԻՄ ԹՇՆԱՄԻՆԵՐԸ,— ԴԱՇՆԱԿՑԱԿԱՆ
ՖԱՇԻՍՏՆԵՐԸ, ՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ-ԲՈՒԽԱ-
ՐԻՆԱԿԱՆ ՅԵՎ ԲՈՒՐԺՈՒԱ-ՆԱՑԻՈՆԱԼԻՍ-
ՏԱԿԱՆ ԱՄԵՆ ԳՈՒՅՆԻ ՀԱԿԱՀԵՂԱՓՈԽԱ-
ԿԱՆ ՎՈՀՄԱԿՆԵՐԸ ՀՈՂՄԱՑՐԻՎ ՅԵՂԱՆ
ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԲԱՐԵԿԱՄ
ՀԱՆՃԱՐԵՂ ՍՏԱԼԻՆԻ ՑՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՈՒ
ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՇՆՈՐՀԻՎ, ՄԵԾ ՍՏԱ-
ԼԻՆԻ ՄԵՐՁԱՎՈՐ ԶԻՆԱԿԻՑ ԸՆԿ. ՄԻԿՈ-
ՅԱՆԻ ԱՆՄԻՋԱԿԱՆ ՈԺԱՆԴԱԿՈՒԹՅԱՄԲ:



ՄԵԾ ՍՏԱԼԻՆԸ ՅԵՎ ԸՆԿԵՐՆԵՐ ՄՈ-
ԼՈՏՈՎՆ ՈՒ ՄԻԿՈՅԱՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ
ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴՈՒՄ ԿՓԱՅԼԵՆ
ՎՈՐՊԵՍ ՓԱՐՈՍ, ՎՈՐՊԵՍ ՎԱՌՎՌՈՒՆ
ԱՐԵԳԱԿ, ՎՈՐՊԵՍ ՈՒՂԵՑՈՒՅՑ ԱՍՏՂ:
ՆՐԱՆՑ ԱՆՄԻՋԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ
*ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ԷԼ ԱՎԵԼԻ ՀԱՄԱ-
ԽՄԲՎԵԼՈՎ ՆՐԱՆՑ, ՀԱՄԿՈՄԿՈՒՍԻ (ԲՈԼ-
ՇԵՎԻԿՆԵՐԻ) ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ
ՇՈՒՐՋԸ, ՀԱՂԹԱՆԱԿԻՑ — ՀԱՂԹԱՆԱԿ,
ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐԸ
ԿԸՆԹԱՆԱ:*

ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵ-
ՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵ-
ՐԸ:

ԿԵՑՑԵ՛ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՅԵՎ ԱՆ-
ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԸ:

ԿԵՑՑԵ՛Ն ՄԵԾ ՍՏԱԼԻՆԸ ՅԵՎ ՆՐԱ
ՄԱՐՏԱԿԱՆ ԶԻՆԱԿԻՑՆԵՐ՝ ԸՆԿԵՐՆԵՐ ՄՈ-
ԼՈՏՈՎՆ ՈՒ ՄԻԿՈՅԱՆԸ:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ № 1— Ս. Կ-Ի ԸՆՏՐԱԿԱՆ ՈԿՐՈՒԳԻ ՈԿՐՈՒԳԱՅԻՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒ ԸՆԿԵՐ ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻ ԳՐԱՆՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Քննության առնելով Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածություններ առաջադրելու մասին ոկրուգային ընտրական հանձնաժողովում ստացված փաստաթղթերը, ոկրուգային ընտրական հանձնաժողովն արձանագրելով ներկայացված փաստաթղթերի լիակատար համապատասխանությունը «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության»* 47, 48 ,49, 50, 51, *և* 52-*րդ հոդվածներին*, վորոշեց.



*«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության»* 51-*րդ հոդվածի հիման վրա, Երևան քաղաքի* № 1 — *ՍԿ-ի ընտրական ոկրուգում Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավոր ընտրվելու համար գրանցել Ս. Մ. Կիրովի անվան ՍԿ — «Սովպրեն» կոմբինատի բանվորների, ծառայողների, ինժեներատեխնիկական աշխատողների ընդհանուր ժողովի կողմից, վորին ներկա յեն յեղել* 3 *հազար մարդ, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածու առաջադրված ընկեր Իոսիֆ Վիսսարիոնովիչ* Ստալինին՝ *ծնված* 1879 *թվին, ՀամԿ(բ)Կ անդամ, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Գլխավոր Քարտուղար, ապրում է Մոսկվա քաղաքում — Կրեմլում:*

*«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության»* 56-*րդ հոդվածի հիման վրա ընկեր Իոսիֆ Վիսսարիոնովիչ* Ստալինի *թեկնածությունը մտցնել Երևան քաղաքի* № 1 — *ՍԿ-ի ընտրական ոկրուգի ընտրական բյուլետենի մեջ:*

*«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության»* 55-*րդ*

հոդվածի համաձայն, վորոշումը հրապարակել ի գիտություն ընդհանուրի:

№ 1 — ՍԿ-ի ընտրական ոկրուգի ոկրուգային ընտրական հանձնաժողովի

Նախագահ՝ Մ. ՈՒԼՈՅԱՆ

Նախագահի տեղակալ՝ Մ. ՆԱԶԱՐՅԱՆ

Քարտուղար՝ Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Հանձնաժողովի անդամներ՝ Ն. ԿՈՒԶՄԵՆԿՈ, Գ. ՂԱՐԱԳՅՈՒԼՅԱՆ, Ն. ՎԵՐՄԻՇՅԱՆ, Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ, Հ. ԳՅՈՒԼԲՈՒԴԱՂՅԱՆ, Թ. ԲԱՐՍԵՂՅԱՆ, Մ. ԿՈՓԻԿՅԱՆ, Վ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

14 մայիսի, 1938 թ.

քաղ. Յերևան:



## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՅԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ № 33 ԳԵԴԱՐՉԱՅԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՈԿՐՈՒԳԻ ՈԿՐՈՒԳԱՅԻՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒ ԸՆԿԵՐ ՎՅԱՉԵՍԼԱՎ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ ՄՈԼՈՏՈՎԻ ԳՐԱՆՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Քննության առնելով Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածություններ առաջադրելու մասին ոկրուգային ընտրական հանձնաժողովում ստացված փաստաթղթերը, ոկրուգային ընտրական հանձնաժողովն արձանագրելով ներկայացված փաստաթղթերի լիակատար համապատասխանությունը «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 47, 48, 49, 50, 51 և 52-րդ հոդվածներին, ՎՈՐՈՇԵՑ՝

«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 51-րդ հոդվածի հիման վրա Երևան քաղաքի № 33 — Գեղարչայի ընտրական օկրուգում Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավոր քվեարկվելու համար գրանցել Քանաքեռգեսի վարչության, Պետհրատի և «Խորհրդային Հայաստանի» տպարանների, Մաքսիմ Գորկու անվան դպրոցի ուսուցիչների, բանվորների, ծառայողների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ընդհանուր ժողովների կողմից, վորոնց ներկա յեն յեղել 778 մարդ, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածու առաջադրված ընկեր Վյաչեսլավ Միխայլովիչ ՄՈԼՈՏՈՎԻՆ — ծնված 1890 թվին Համ. Կ(բ)Կ. անդամ, ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահ, ապրում է Մոսկվա քաղաքում, Կրեմլում:

«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 56-րդ հոդվածի հիման վրա, ընկեր Վյաչեսլավ Միխայլովիչ ՄՈԼՈՏՈՎԻ թեկնածությունը մտցնել Երևան քաղաքի № 33—Գեղարչայի ընտրական օկրուգի ընտրական բյուլետենի մեջ:



Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 55-րդ հոդվածի համաձայն, վորոշումը հրապարակել ի գիտություն ընդհանուրի:

Օկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահ՝ Հ. ՀԱԿՈԲՅԱՆ
Նախագահի տեղակալ՝ Թ. ԱԼԻՅԵՎ
Քարտուղար՝ Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Հանձնաժողովի անդամներ՝ Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, Ս. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ, Ա. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ, Ս. ԴԱՎԹՅԱՆ, Գ. ՎԱՐԴԱՆՅԱՆ, Վ. ՍՏԵՓԱՆՅԱՆ, Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ, Վ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ № 9 — ԳՈՐԾԱՐԱՆԱՅԻՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ՕԿՐՈՒԳԱՅԻՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ԹԵԿՆԱԾՈՒ ԸՆԿԵՐ ԱՆԱՍՏԱՍ ԻՎԱՆՈՎԻՉ ՄԻԿՈՅԱՆԻ ԳՐԱՆՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Քննության առնելով Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածություններ առաջադրելու մասին օկրուգային ընտրական հանձնաժողովում ստացված փաստաթղթերը, օկրուգային ընտրական հանձնաժողովը արձանագրելով ներկայացված փաստաթղթերի լիակատար համապատասխանությունը «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության»* 47, 48, 49, 50, 51 *և* 52*-րդ հոդվածներին,* վորոշեց.

*«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության»* 51*-րդ*



*հոդվածի հիման վրա, Երևան քաղաքի* № 9 — *Գործարանային ընտրական օկրուգում Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավոր քվեարկվելու համար գրանցել Երևանի Կոնսերվի գործարանի, Ֆ. Ե. Ձերժինսկու անվան Մեքենաշինական գործարանի, Տրամվայի պարկի, Միկոմբինատի բանվորների, ծառայողների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների ընդհանուր ժողովների կողմից, վորոնց ներկա յեն յեղել* 1850 *մարդ, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորի թեկնածու առաջադրված ընկ. Անաստաս Իվանովիչ* Միկոյանին՝ *ծնված* 1895 *թվին, Համ. Կ(բ)Կ անդամ, ԽՍՀ Միության ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահի տեղակալ, ապրում է Մոսկվա քաղաքում:*

*«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության»* 56*-րդ հոդվածի հիման վրա, ընկ. Ա. Ի.* Միկոյանի *թեկնածությունը մտցնել Երևան քաղաքի* № 9 — *Գործարանային ընտրական օկրուգի ընտրական բյուլետենի մեջ:*

*«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության»* 55*-րդ հոդվածի համաձայն, վորոշումը հրապա-*

բակել ի գլխուլթյուն ընդհանուրի:

Օկրուգային ընտրական հանձնաժողովի

Նախագահ՝ Ս. ՂԱԼԵՋՅԱՆ

Նախագահի տեղակալ՝ Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Քարտուղար՝ Գ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Հանձնաժողովի անդամներ՝ Ս. ՄԻՆԱՍՅԱՆ, Ս. ՈՀԱՆՋԱՆՅԱՆ, ՑԵ. ՊՈՂՈՍՅԱՆ, Զ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, Լ. ՂԱԶԱՐՅԱՆ, Վ. ՎԱՐՈՍՅԱՆ, Մ. ՊԱՊՅԱՆ, Ա. ԶԱՎՈՒՇՅԱՆ

14 մայիսի, 1938 թ.

Քաղ. Երևան



Ի. ԶԱՐԻՆ

## ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում Անդրկովկասի խորհրդային սոցիալիստական հանրապետությունների —Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի ձեռք բերած հոյակապ հաջողությունները լենինյան— ստալինյան ազգային քաղաքականության հաղթանակն են հանդիսանում:

Նախահեղափոխական Անդրկովկասը ցարական կալվածատիրական— կապիտալիստական Ռուսաստանի գաղութն էր: Ռուս և տարբերկրյա կապիտալիստները գիշատիչ կերպով շահագործում էին երկրի ամենահարուստ ընդերքը (նավթ, պղինձ, մարգանեց): Ռուսական կապիտալիզմն Անդրկովկասը վերածել էր հումք մատակարարողի և իր ֆաբրիկաների արդյունաբերա-

կան արտադրանքի վաճառահանման շուկայի:

Անդրկովկասը հետամնաց ու աղքատ երկիր էր: Հողը մշակվում էր նահապետական եղանակներով: Անասնապահությունը կիսաքոչվորային էր:

Ցարիզմն անողոքաբար խեղդում էր Անդրկովկասի ժողովուրդների ազգային կուլտուրան, ամեն կերպ հետ էր պահում նրանց կուլտուրական զարգացումը: Ցարական չինովնիկներն ամբողջ ուժով ազգային թշնամանք էին բորբոքում Անդրկովկասի ժողովուրդների միջև, նրանց հրահրում եյին միմյանց դեմ և կազմակերպում էին արյունահեղ ջարդեր ու կոտորածներ:

Երբ ցարիզմը տապալվեց, Անդրկովկասում օտարերկրյա իմպերիալիստների օգնությամբ ստեղծվեցին բուրժուա-նացիոնալիստական կառավարություններ: Ադրբեջանում — մուսավաթական կառավարությունը, Վրաստանում — վրացական մենշևիկների կառավարությունը, Հայաստանում— դաշնակցական կառավարությունը: Այս բոլոր կառավարությունները հենվում էին օտարերկրյա ինտերվենտների սվինների վրա և Անդրկովկասի ժողո-



վուրդների համար բերին ազգամիջյան նոր կռիվներ ու տնտեսական սարսափելի փլուզում:

Մուսավաթականների տիրապետության ժամանակվա ընթացքում Ադրբեջանում նավթի հանույթն ընկավ 7 միլիոն տոննից մինչև 2,5 միլիոն տոննի: Մարգանեցի հանույթը Վրաստանում մենշևիկների օրով կրճատվեց 12 անգամ, Հայաստանի պղնձահանքերը դաշնակների օրով հեղեղվեցին:

Անդրկովկասի ամբողջ արդյունաբերության արտադրանքը հազիվ հասնում էր նախապատերազմյան մակարդակի 18—20 տոկոսին: Բամբակի դաշտերը կրճատվեցին 148 հազար հեկտարից մինչև 1,8 հազար հեկտարի:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԵՐԵՑ ԱԶԳԱՅԻՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ՅԵՎ ՎԵՐԱԾՆՈՒՄ

Անդրկովկասում խորհրդային իշխանության հաստատումով միայն (1920—1921 թվականներին) վերջ տրվեց նրանում բնակվող ժողովուրդների տառապանքներին: Հաստատվեց ազգային խաղաղություն, վերականգնվեցին տնտեսական կապերը Խոր-

հրդային Ռուսաստանի և Խորհրդային Ուկրաինայի հետ և սկսվեց Անդրկովկասի տնտեսական ու կուլտուրական արագ ծաղկումը:

Լենինի—Ստալինի կուսակցության ղեկավարությամբ, Անդրկովկասի ժողովուրդները վիթխարի հաջողություններ ձեռք բերին սոցիալիստական շինարարության և ազգային խաղաղության ամրապնդման բնագավառում: Անդրկովկասի բոլշևիկների պայքարը հանուն սոցիալիզմի, ընդդեմ բանվոր դասակարգի բոլոր թշնամիների, գլխավորում էին ընկեր Ստալինի ամենամերձավոր զինակիցներ՝ ընկ. ընկ. Կիրովը և Օրջոնիկիձեն:

Ամբողջ Խորհրդային Միությունը և առաջին հերթին ռուս բանվոր դասակարգը կազմակերպչական ու նյութական–տեխնիկական հսկայական օգնություն ցույց տվին անդրկովկասյան հանրապետությունների աշխատավորներին: Արդյունաբերական տեսակետից ավելի զարգացած Խորհրդային Ռուսաստանն ու Խորհրդային Ուկրաինան Անդրկովկասին տալիս էին հարյուր հազարավոր տոնն մետաղ, հազարավոր մեքենաներ՝ արդյունաբերության



համար, տուրբիններ՝ էլեկտրակայանների համար, շոգեքարշեր ու վագոններ՝ տրանսպորտի համար, տրակտորներ ու գյուղատնտեսական մեքենաներ՝ գյուղատնտեսության համար: Խորհրդային Ռուսաստանի բանվոր դասակարգը Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի բանվորներին օգնում էր՝ յուրացնելու բարդ տեխնիկան և օգնում էր նրանց իր կազմակերպչական ու տեխնիկական փորձով: Նրա օգնությամբ աճում, դաստիարակվում և կոփվում էին բանվորների վորակյալ կադրեր տեղական ազգություններից:

Վրաստանը, Ադրբեջանը և Հայաստանը, վորոնք կապված են ինտերնացիոնալ բարեկամության ամուր կապերով, վերածվեցին ծաղկող ինդուստրիալ տեսակետից զարգացած, կուլտուրական հանրապետությունների:

Սակայն վորքան էլ մեծ են այդ հաջողությունները, դրանք կլինեյին զգալիորեն ավելի, յեթե չլիներ այն վնասարարական դիվերսիոն աշխատանքը, վոր Անդրկովկասի հանրապետություններում կատարում եյին ժողովրդի բոլոր գույնի թշնամիները—

բուրժուական նացիոնալիստները, տրոցկիստները, բուխարինականները։

«Նացիոնալ-ուկլոնիստներն սկզբից հենց գլորվեցին տրոցկիստական-մենշևիկյան դիրքի վրա, տրոցկիզմի դրոշի տակ կատաղի կերպով պայքարում էին Լենինի—Ստալինի կուսակցության դեմ ու այնուհետև հակահեղափոխական տրոցկիզմի շարքերում վերածվեցին ֆաշիզմի վարձկան գործակալների, լրտեսների, վնասարարների, դիվերսանտների, մարդասպանների, ստոր դավաճանների ու ժողովրդի թշնամիների լկտի բանդայի»[1]։

1937 թվի դեկտեմբերի 12-ին, ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի ընտրությունների օրը, Անդրկովկասի բոլոր ազգությունների միլիոնավոր տղամարդիկ ու կանայք միահամուռ կերպով ձայն տվին կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։ Այդ՝ դեպի Լենինի— Ստալինի կուսակցությունը ժողովուրդների անսահման սիրո ու վստահու-

1) Լ. Բերիա,— Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը, էջ՝ 167, Հայ. Կ(բ)Կ Կուսհրատ, 1938 թ.



թյան հուժկու ցուցադրումն էր։

Այժմ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի ժողովուրդները պատրաստվում են իրենց հանրապետական Գերագույն օրգանների ընտրություններին։ Եվ նորից կոմունիստներն ու անկուսակցականները, միասնական համախմբված ճակատով, միլիոնավոր ձայներով կարտահայտեն իրենց հավատարմությունը՝ Լենինի – Ստալինի գործին, իրենց հաստատ վճռականությունը՝ ամեն տեսակ թշնամիներից պաշտպանելու իրենց հայրենիքի անկախությունը, ազատությունն ու երջանկությունը։

## ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Արևելյան Անդրկովկասում, տափաստանային հսկայական տարածությունների վրա տեղավորված է Ադրբեջանական ԽՍՀ-ն։ Ադրբեջանը շրջապատված է՝ հյուսիսից- Մեծ Կովկասյան լեռնաշղթայի լեռներով, հարավ- արևմուտքից- Փոքր Կովկասով և հարավից- Թալիշի լեռներով։ Արևելքում նրա ափերը ողողում են Կասպից ծովի ջրերը։ Ադրբեջանական ԽՍՀ-ի կազմի մեջ մտնում են Նախիջևանի ԱԽՍՀ-ն և Լեռնա-

յին Ղարաբաղի ավտոնոմ մարզը: Ադրբեջանական ԽՍՀ-ն ամենամեծն է անդրկովկասյան հանրապետություններից: Նրա տերիտորիան 86 հազար քառակուսի կիլոմետր է:

Ադրբեջանական հանրապետությունը բազմազգ յերկիր է: Բացի ադրբեջանցիներից վորոնք կազմում են Ադրբեջանի բնակչության 60 տոկոսից ավելին, հանրապետության մեջ ապրում են ավելի քան 20 ազգությունների ներկայացուցիչներ— ռուսներ, ուկրաինացիներ, հայեր, վրացիներ, լեզգիներ, ավարցիներ, քրդեր, թալիշներ, թաթեր և այլն:

## ԲՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մեծ են ու բազմազան Ադրբեջանի բնական հարստությունները. ծառերի թանկարժեք տեսակներ— սամշիտ, վայրի խուրմա, բուկ, դրար, կենդանիների հարուստ աշխարհ—հովազ, վայրի վարազ, լեռնային այծ, ազնիվ յեղջերու. Հանրապետության ջրերում կան ձկներ— լոսոս, սերուգա ու օսետրինա, վորոնք տալիս են սև խավիար: Ուսումնասիրվում է Ադրբեջանի ընդերքը, վորն իր մեջ պարունակում է վիթխարի հարստություններ: Դրանցից գլխավորը,



վորն ունի համաշխարհային նշանակություն, այդ՝ Ապշերոնյան թերակղզու նավթն է: Այստեղ է կենտրոնացած Խորհրդային Միության նավթի պաշարների կես մասը, իսկ Խորհրդային Միությունը նավթի պաշարներով առաջին տեղն է գրավում աշխարհում: Բացի նավթից, Ադրբեջանում կան յերկաթի, ալունիտների, պղնձի, մարգանեցի, արծաթի, արճճային հանածոների, բարիտի, հազվագյուտ մետաղների հանքավայրեր:

Մինչև հեղափոխությունն Ադրբեջանը ռուսական գաղութ էր, հետամնաց ագրարային յերկիր: Միակ արդյունաբերական կենտրոնը նավթի քաղաք Բաքուն էր: Այստեղ օտարերկրյա և ռուս կապիտալիստները գիշատիչ կերպով նավթ էյին արդյունահանում: Բազմաթիվ ու բազմազգ պրոլետարիատի քաղաք Բաքուն դասակարգային պայքարի հիանալի դպրոց է անցել ընկեր Ստալինի և նրա պանծալի աշակերտներ ու զինակիցներ՝ ընկ. ընկ. Օրջոնիկիձեյի, Կիրովի, Միկոյանի ղեկավարությամբ:

## ԽՍՀՄ-Ի ՆԱՎԹԱՅԻՆ ԱՌԱՋԻՆ ԲԱԶԱՆ

Խորհրդային ժամանակաշրջանում Ադրբ-

բեջանը հսկայական հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերական զարգացման մեջ: Ադրբեջանի ինդուստրիայի առաջավոր ճյուղը—նավթարդյունաբերությունը լրիվին վերակառուցվեց: Առաջ նավթը հանում եյին ձեռքի յեղանակով— քաշելով: Այն՝ խոր նավթահորերից քաշում եյին նեղ դույլերով— ժելոնկաներով: Այժմ Բաքվի նավթահորերն ամբողջապես մեքենայացվել և ելեկտրիֆիկացիայի յեն յենթարկվել: Աշխատանքը դարձել է անհամեմատ ավելի հեշտ ու արտադրողական: Խորհրդային ժամանակաշրջանում հին նավթահողերում հայտնաբերվել են նոր հարուստ պաշարներ: Բացվել են նոր նավթաբեր շրջաններ— Սուլխու-Թափա, Լոկ- Բատան, Պուտինյան հովիտը, Մերձքուրյան հարթավայրը: 1936 թվին արդյունահանվել է արդեն 22,26 միլիոն տոնն նավթ— համարյա յերեք անգամ ավելի, քան 1913 թվին: Ադրբեջանը 1936 թվին տվեց Միության ամբողջ նավթի հանույթի 76 տոկոսը:

1935 թվին Ադրբեջանի նավթարդյունաբերությունը տվել եր համարյա յերեք անգամ ավելի նավթ, քան հայտնի Անգլո-պարսկական ընկերությունը—մոտ յերկու անգամ ա-



վելի, քան Մերձավոր Արևելքի բոլոր յերկրները— Իրանը, Յեգիպտոսը, Իրաքը, Բահրեյան կղզիները միասին վերցրած և մոտ 4 անգամ ավելի, քան Մեքսիկան:

Ադրբեջանի նավթաթորման արդյունաբերությունն ըստ եյության բոլորովին նոր ստեղծվեց խորհրդային իշխանության օրով: Բաքվի նավթաթորման միայն յերկու խոշորագույն գործարաններն օրական վերամշակում են ավելի շատ նավթ, քան 1935 թվին վերամշակել են Ռումինիայի բոլոր 42 նավթաթորման գործարանները (34 հազար տոնն), կամ Կանադայի 42 գործարանները (22 հազար տոնն) ու Անգլիայի 13 գործարանները (11 հազար տոնն):

Ադրբեջանի նավթարդյունաբերությունը կկարողանար յերկրին տալ զգալիորեն ավելի նավթ, քան նա տվել է մինչև այժմ, յեթե չլինեին ժողովրդի թշնամիների վնասարարությունը: Նրանք շարքից հանում եյին հարուստ նավթահորերը, մշակում եյին ավելի սակավ շահավետ շերտերը:

Ժողովրդի թշնամիներն առանց մաքրելու եյին թողնում հազարավոր նավթահորեր, վորի հետեվանքով դժվարանում և դադարում եր հանույթը: Նրանք ձգձգում եյին Բաքվի ելեկտրոկայանների նոր կառուցու-

թյունների շահագործման հանձնելը, դրանով իսկ վիժեցնելով աշխատանքի նորմալ ընթացքը նավթահորերում և գործարաններում:

Բայց որքան էլ նրանք վնասեցին, որքան էլ մեծ վնաս հասցրին նրանք, այնուամենայնիվ նրանց չհաջողվեց կանգնեցնել Խորհրդային Ադրբեջանի բուռն զարգացումը:

Մեծ չափով զարգացել են նավթարդյունաբերության հետ կապված ճյուղերը, հատկապես նրա համար սարքավորում արտադրող մեքենաշինությունը: Լեյտենանտ Շմիդտի անվան փոքր գործարանը վերածվել է մեքենաշինական խոշոր գործարանի: Կառուցվել է Ձերժինսկու անվան մեքենաշինական նոր գործարանը:

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՃՅՈՒՂԵՐԸ

Աճել են արդյունաբերության նոր ճյուղեր, ստեղծվել է տեքստիլ արդյունաբերություն, որը հիմնականում հիմնվում է տեղական բամբակի վրա: Կիրովաբադում կառուցված է բամբակե գործվածքեղենի կոմբինատ և մահուդի ֆաբրիկա, Նուխում ու Ստեփանակերտում— մետաքսամանական



ֆաբրիկաներ: Սումգայիթում, Բաքվից ոչ հեռու, ստեղծվում է քիմիական արդյունաբերության նոր կենտրոն (ազոտային պարարտանյութերի և սինթետիկ կաուչուկի): Խոշոր արդյունաբերության արտադրանքը 1936 թվին աճել է 1913 թվի համեմատությամբ 5,4 անգամ:

Գործում են Բաքվի հզոր էլեկտրոկայանները: Շուտով շահագործման կհանձնվի Թարթար գետի վրա կառուցվող մեծ հիդրոկայանը (Լեռնային Ղարաբաղի ավտոնոմ մարզ): Էլեկտրոէներգիայի մշակությունն աճել է՝ 1928 թվի 377 միլիոն կիլովատ-ժամից 1936 թվին հասնելով 1266 միլիոն կիլովատ- ժամի:

Ադրբեջանի մայրաքաղաք Բաքուն դարձել է Միության մեջ խոշորագույն արդյունաբերական կենտրոններից մեկը: Բնակիչների թվով Բաքուն յերկրորդ տեղն է գրավում ԽՍՀՄ-ում (Մոսկվայից և Լենինգրադից հետո):

## ԽՍՀՄ-Ի ԲԱՄԲԱԿԱԳՈՐԾԱԿԱՆ ՅԵՐԿՐՈՐԴ ԲԱԶԱՆ

Միանգամայն վերափոխվել է հանրապետության գյուղատնտեսությունը:

1937 թվի կեսերին արդեն կոլեկտիվացված
էին տնտեսությունների 86,5 տոկոսը. Հան
րապետության դաշտերում աշխատում էին
4600 տրակտոր՝ ավելի քան 70 հազար ձիա
ուժի կարողությամբ:

Ադրբեջանի գյուղատնտեսության հիմնա-
կան կուլտուրան բամբակն է: Մուղանի և
Միլի տափաստանների՝ անցյալում չոր ու
ամայի հողերն այժմ ոռոգված են: Այդ
տարածություններում աճած խորհտնտեսու-
թյունների ու կոլտնտեսությունները տալիս
են աշխարհում լավագույն տեսակների_ յե-
գիպտական և սիայլենդ բամբակի բարձր
բերք: Ադրբեջանը դարձել է Միության
բամբակագործական յերկրորդ բազան: Բամ-
բակի ցանքերի տարածությունը վերջին տա-
րիների ընթացքում համարյա կրկնապատկ-
վել է:

Կասպից ծովի հարավ-արևմտյան ափին
ընկած են կիզիչ ու խոնավ սուբտրոպիկնե-
րը— Լենքորանը և Աստարան: Այստեղ ըս-
տեղծված է մերձարևադարձային կուլտու-
րաների՝ Միության մեջ յերկրորդ (Վրաս-
տանից հետո) շրջանը: Կոլտնտեսություն-
ներում և խորհտնտեսություններում աճեց-
վում են խաղող, Ֆիստաշկա, նուշ, թան-



կարժեք ցիտրուսային կուլտուրաներ— ման-
դարին և նարինջ: Արագ աճում է նաև անաս-
նապահությունը: 1933 թվի համեմատու-
թյամբ 1936 թվի ամառը վոչխարների և
այծերի թիվն ավելացել էր համարյա կրկ-
նակի չափով: Համարյա կրկնապատկվել է
նաև խոշոր յեղջերավոր անասունների թի-
վը:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԱԴՐԲԵՋԱՆԻ ԿՈՒԼՏՈՒ-
## ՐԱՆ

Արագորեն աճում են Ադրբեջանի աշխա-
տավորների կուլտուրան և նյութական բա-
րեկեցությունը: Դպրոցական տարիքի բոլոր
յերեխաները սովորում են դպրոցներում:
Միջնակարգ դպրոցներում սովորողների թի-
վը 1936-37 ուսումնական տարում՝ 1914-
1915 թվականի համեմատությամբ աճել էր
34,5 անգամ:

Ինտերնացիոնալ սոցիալիստական կուլտու-
րան զարգանում է ազգային ձևով: Ադրբե-
ջանի դպրոցներում ուսուցումը տարվում է
15 լեզուներով:

Հանրապետության մեջ կան 13 բարձրա-
գույն ուսումնական հաստատություն, 80-
ից ավելի գիտա- հետազոտական հիմնարկ,
14 թատրոն և 544 կինո:

Այս տարվա ապրիլին Մոսկվայում տեղի ունեցավ ադրբեջանական արվեստի տասնօրյակը: Ադրբեջանական ժողովուրդը Խորհրդային յերկրի մայրաքաղաքում ցուցադրեց իր ժողովրդական տաղանդները, իր ազգային արվեստի փայլուն ծաղկումը, իր յերաժիշտների, յերգիչների, պարողների դեղարվեստական բարձր վարպետությունը:

Այսպե՛ս են սոցիալիզմի բարերար արևի տակ ծաղկում ադրբեջանական ժողովրդի տնտեսությունը, կուլտուրան, արվեստը:

## ՎՐԱՑԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Վրացական ԽՍՀ-ն ձգված է Անդրկովկասի արևմտյան մասի լեռների ու հովիտների մեջ: Նա գրավում է 70 հազար քառակուսի կիլոմետր տարածություն:

Բնակչությունը կազմում են վրացիները (67,7 տոկոս), հայերը (11,6 տոկոս), ադրբեջանցիները (5,2 տոկոս), ռուսները, ուկրաինացիները, օսեթինները, հույները, հրեաները և ուրիշները:

Վրացական ԽՍՀ-ի կազմի մեջ մտնում են Աբխազական ԱԽՍՀ-ն, Աջարական ԱԽՍՀ-ն, Հարավ-Օսեթական ավտոնոմ մարզը:



Հարուստ է Վրաստանի ընդերքը: Նա ունի մարգանեցի՝ աշխարհում ամենահարուստ հանքավայրեր (Չիաթուրի), քիմիական հումքի և վոչ-մետաղային հանածոների բազմազան տեսակներ (բարիտ, անդեզիտ, գումբրին և այլն), ածուխ՝ Տկվարչելիում, Տկիբուլիում, Ախալցխայում, նավթ՝ Շիրակի տափաստանում, բուժիչ հանքային աղբյուրներ՝ Բորժոմիում, Ծղալտուբոյում:

Եներգիայի անսպառ աղբյուր են համարվում Վրաստանի արագահոս լեռնային գետերը—Քուռը, Ռիոնը, Աջարիս-Ծղալին, Խրամը և շատ այլ գետեր:

Միլիոնավոր հեկտարներ են գրավում լեռնային թանկարժեք անտառները:

Արգավանդ է հողը՝ հովիտներում, հյութալի յեն կանաչ մարգագետինները՝ սարերում:

Առատ է ու հարուստ Վրաստանի բնությունը, բայց այդ առատությունն ու այդ հարստությունը հին, նախահեղափոխական Վրաստանում վո՛չ կուշտ կյանք վո՛չ էլ յերջանկություն չեյին տալիս աշխատավոր վրացուն:

# ԱՆՑՅԱԼԻՑ

Փոքրիկ Վրաստանը գտնվում էր համաշխարհային առևտրական մեծ ճանապարհների վրա, որոնք Հնդկաստանից և Իրանից՝ Քուռ և Ռիոն գետերի հովիտներով տանում էին դեպի Սև ծովի ափերը, ապա դեպի Եվրոպա։ Աշխարհագրական դիրքի հարմարությունը, հարուստ բնությունը, աշխատասեր, տաղանդավոր ժողովուրդը հին ժամանակներից սկսած իրենց վրա էին գրավում նվաճողների ագահ հայացքները։

Հռոմեական լեգեոնները, բյուզանդական զորքերը, Ջինգիզխանի հորդաները, թյուրքական յենիչերիները, իրանական շահերի զորքերը ներխուժում էին երկիրը, հրկիզում քաղաքները, ոչնչացնում գյուղերը, գերության, ստրկության տանում բնակիչներին, իսկ մնացածների վրա դնում ուժից վեր տուրքեր։

19-րդ դարի սկզբներին (1801 թվին) Վրաստանը միացվեց Ռուսաստանին։ Ռուսաստանին միացվելուց հետո դադարեցին իրանցիների արշավանքները։

Բայց վրաց ժողովուրդը ծանր տառապում էր ռուսական ցարիզմի և վրացական իշխան-



ների, ազնվական-կալվածատերերի կրկնակի ճնշումից։ Վրաց գյուղացիները բազմիցս ապստամբել են իրենց կեղեքիչների դեմ։

Այդ ապստամբությունները դաժանորեն ճնշվում էին ցարական զորքերի կողմից։ Պատժիչ ջոկատները գնդակահարում և կախում էին ապստամբներին, հրկիզում էին գյուղերը, ամայացնում էին դաշտերը, կտրատում էին պտղատու և խաղողի այգիները, որոնք աճեցվել էին սերունդների աշխատանքով։

Ցարական ինքնակալությունն ամեն կերպ խոչընդոտ էր հանդիսանում Վրաստանում արդյունաբերության ստեղծմանը։ Ցարիզմն ուզում էր Անդրկովկասը պահպանել որպես վաճառահանման շուկա ռուս ֆաբրիկատերերի համար։ Այնուամենայնիվ, 19-րդ դարի վերջերին Վրաստանում երևացին վրացական պրոլետարիատի առաջին ջոկատները—Թբիլիսիի և Քութայիսիի երկաթուղային արհեստանոցների բանվորները, Չիաթուրայի մարգանեցի հանքերի, Բաթումիի բեդոնի գործարանների ու նավթամուղ կայանների, Թբիլիսիի թեթև արդյունաբերության մանր ձեռնարկությունների

բանվորները: Աշխատանքի պայմանները սարսափելի էին՝ 14–16 ժամյա աշխատանքային օր, աղքատիկ աշխատավարձ, դաժան վերաբերմունք:

Շահագործողների դեմ բանվորների պայքարը գլխավորեց Անդրկովկասի բոլշևիկյան առաջին կազմակերպությունների ստեղծողն ու կազմակերպողը՝ Իոսիֆ Վիսարիոնովիչ Ստալինը:

Ցարիզմը վրաց աշխատավորների հեղափոխական ելույթներին պատասխանեց ամենադաժան տեռորով, գնդակահարություններով, կախաղաններով, Սիբիր տաժանակրության աքսորելով:

Ռուսաստանում տեղի ունեցած Հոկտեմբերյան Սոցիալիստական հեղափոխությունից հետո, իշխանությունը Վրաստանում գրավեցին մենշևիկները, որոնց աջակցում էին օտարերկրյա իմպերիալիստները: Իրենց տիրապետության ժամանակաշրջանում մենշևիկները Վրաստանը վերածեցին իմպերիալիստական պետությունների գաղութի: Երկիրը հասցրվեց սարսափելի աղքատության: Բանվորները մնացին առանց աշխատանքի, առանց հացի: Սովահար էր լինում հարկերի ու ռեկվիզիցիաների հետև-



վանքով քայքայված գյուղացիությունը:

Բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ, բանվորները գործադուլներ էին հայտարարում Թբիլիսիի և Քութայիսի ֆաբրիկաներում ու գործարաններում, Չիաթուրայի հանքերում, Փոթիի նավահանգստում: Զենքի դիմեց Գուրիայի և Մինգրելիայի գյուղացիությունը, հանդես էին գալիս գյուղացիները Արևմտյան Վրաստանի մյուս շրջաններում,— դավաճան մենշևիկների դեմ վռաքի ելավ Աբխազիան, ապստամբեց հարավային Օսեթիան:

Սպիտակ-գվարդիական ու մենշևիկյան բանդաները հրկիզում էին գյուղերը, գնդակահարում էին գյուղացիներին, քշում էին անասունների հոտերը, ցրում էին բանվորների միտինգները, իրենց դաժանությամբ չզիջելով ցարական «պատժիչներին»:

Ժողովրդական մասսաների անձնազոհ պայքարն ընդդեմ մենշևիկների, գլխավորում էին Լենինի և Ստալինի հավատարիմ զինակիցներ՝ Սերգո Օրջոնիկիձեն և Սերգեյ Միրոնովիչ Կիրովը: 1921 թվի փետրվարի 25-ին Վրաստանում հաստատվեց խորհրդային իշխանությունը:

## ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԾԱՂԿՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ

Այդ ժամանակվանից անցել է 17 տարի: Ավերված, իմպերիալիստների կողմից ստրկացված, քայքայված ու սովահար յերկիրը վերածվեց ազատ, սոցիալիստական Վրացական ԽՍՀ-ի, դարձավ հզոր Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության իրավահավասար անդամը:

Խորհրդային իշխանությունը Վրաստանում ստեղծեց հզոր սոցիալիստական արդյունաբերություն: 1936 թվին արդյունաբերական արտադրանքը 1913 թվի մակարդակը գերազանցեց 18,6 անգամ: Կառուցված են տասնյակ խոշոր ֆաբրիկաներ, գործարաններ, հանքեր, էլեկտրոկայաններ:

Վերակառուցվել և մեքենայացվել են Ճիաթուրայի մարգանեցի հանքերը: Զեստաֆոնիում կառուցվել է ֆերրոձուլվածքների գործարան: Ստեղծված է դազգյահների, նավթարդյունաբերական, տեքստիլ, գինեգործական սարքավորման արտադրություն՝ Թբիլիսիում, թեյի սարքավորման արտադրություն՝ Բաթումիում: Գործում են քիմիական նոր գործարաններ:



Զարգանում են թեթև արդյունաբերության մահուդի, մետաքսագործական և այլ ճյուղերը՝ Թբիլիսիում և Քութայիսիում: Կառուցված են տասնյակ թեյի ֆաբրիկաներ, ծխախոտի, կոնսերվի ֆաբրիկաներ, տասնյակ աղացարաններ՝ սարերում, Թբիլիսիի թղթի ֆաբրիկան: Ավարտվում է Ինգուրի ցելյուլոզա-թղթի կոմբինատի շինարարությունը:

Հետազոտված և հայտնաբերված են օգտակար հանածոների տասնյակ նոր հանքավայրեր: Ածուխ է արդյունահանվում Տկվիբուլիում և Տկվարչելիում:

Քուռ գետի վրա, Թբիլիսիի մոտ, գործում է ԽՍՀՄ-ում կառուցված առաջին հիդրոկայաններից մեկը — Զեմո-Ավչալայի հիդրոկայանը: Նրանից վոչ հեռու նոր հիդրոկայան է կառուցվում Քուռ գետի վտակ՝ Խրամի վրա: Ռիոնի փրփրացող ջրերը շարժման մեջ են դնում Ռիոնի հզոր էլեկտրոկայանի տուրբինները: Էլեկտրոկայաններ են կառուցվել Աջարիս-Ծղալի գետի վրա՝ Աջարիստանում և Գումիստա գետի վրա՝ Աբխազիայում:

Հին Վրաստանում հողի մոտ յերեք չորրորդ մասը պատկանում էր կալվածատերե-

րին: Գյուղացիների կես մասն ուներ մեկ դեսյատինից էլ պակաս նադելային հողակտորներ:

Խորհրդային Վրաստանում հողն առհավետ ամրացված է կոլտնտեսություններին: Առ 1-ն հուլիսի 1937 թվի կոլեկտիվացված էին տնտեսությունների 76,5 տոկոսը: Հարյուր հազարավոր հեկտար հողեր, որոնք առաջ ծածկված էին թփուտներով, ճահիճներով, աղքատիկ խոտով, վեր են ածվել արգավանդ դաշտերի, կոլտնտեսային և խորհտնտեսային պտղատու ու խաղողի այգիների:

Ամբողջ ցանքերի տարածությունն աճել է՝ 1913 թվի 738,6 հազար հեկտարից 1936 թվին հասնելով 980,4 հազար հեկտարի: Ծխախոտի ցանքերի տարածությունը կրկնապատկվել է, բոստանների ու բանջարանոցների տարածությունն աճել է ավելի քան 5 անգամ, կերաբույսերինը՝ 7 անգամ, մերձարևադարձային կուլտուրաներինը՝ 30 անգամ:

Կոլխիդայի հարթավայրը և ամբողջ ծովափը՝ Բաթումից մինչև Սոչի — բարեբեր երկիր է: Համաչափ, մեղմ կլիմա, շատ ա-



րև, ջերմություն, խոնավություն: Այստեղ աճում են մերձարևադարձային թանկարժեք կուլտուրաներ — թեյ ու չինական կանեփ—ռամի, նարինջ ու խաղող, մանդարին և բամբուկ, կիտրոն ու ծխախոտ:

Կոլխիդայի 215 հազար հեկտար արգավանդ հողերն առաջ ծածկված էին ճահիճներով: Այժմ տասնյակ հազարավոր հեկտար ճահիճներ ցամաքեցված են: Նրանց տեղում աճում են մերձարևադարձային ծաղկուն այգիներ ու թեյի պլանտացիաներ:

Մինչ հեղափոխությունը վրացական դաշտերում նույնիսկ հասարակ երկաթե գութանը հազվադեպ երևույթ էր: Այժմ, փայտե արորին լծված ծանրաշարժ գոմեշների փոխարեն աշխատում են յերկու հազարից ավելի հզոր տրակտորներ, 44 ՄՏՍ կայաններ 1937 թվին մշակել են կոլտնտեսությունների ցանքերի ամբողջ տարածության ավելի քան 70 տոկոսը:

Մինչև 1936 թվի վերջը Վրաստանում կազմակերպված էին 121 խորհտնտեսություն, այդ թվում՝ 15 թեյագործական խորհտնտեսություն, 16 ցիտրուսային և 8

մերձարևադարձային այլ կուլտուրաներ մշակող խորհտնտեսություն, 16 խաղողագինեգործական և շատ այլ խորհտնտեսություններ (պտղաբուծական, անասնապահական և այլն):

Ալպյան հյութալի, զով լեռնային արոտատեղերը, Արևելյան Վրաստանի տափաստանները, ծաղկուն մարգագետինները, խոտաբույսերի ցանքերը կերով ապահովում են խոզերի, Նրբագեղմ ոչխարների, կաթնատու անասունների, արագընթաց ձիերի հազարավոր հոտերը: Ձիերի թիվն արդեն 1936 թվականի սկզբին նախապատերազմյան մակարդակից գերազանցեց 35 տոկոսով, խոշոր եղջերավոր անասուններինը՝ 29 տոկոսով, խոզերինը՝ 175 տոկոսով:

Ունևոր կյանքով են ապրում վրաց կոլտնտեսականները: Կոլտնտեսային դաշտերի ստախանովականները տարեկան վաստակում են մինչև 30—40 հազար ռուբլի: Անվանի ստախանովական կոլտնտեսականներ Գոգուաձեն, Բարբաքաձեն, Նիժարաձեն, Կասումովը և ուրիշները պարգևատրվել են Խորհրդային Միության շքանշաններով:



## ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

Ցարական ինքնակալությունը խեղդում էր Վրաստանի կուլտուրան, խավար էր տարածում, ժողովրդին պահում էր տգիտության մեջ: Վրաստանի բնակչության 80 տոկոսից ավելին անգրագետ էր: Ոստիկանության պահպանման համար ծախսվում էր 14 անգամ ավելի գումար, քան թե լուսավորության վրա:

Խորհրդային Վրաստանում բոլոր երեխաները սովորում են դպրոցներում: Միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը 1936-37 թվին՝ 1914 - 1915 թվի համեմատությամբ աճել է 16,5 անգամ: Մինչև հեղափոխությունը Վրաստանում կար միայն մեկ ԲՈՒՀ — կանանց բարձրագույն դասընթացները: Այժմ Վրաստանում կան 20-ից ավելի բարձրագույն ուսումնական հաստատություններ:

Վրաստանում ստեղծված են առաջնակարգ թատրոններ — Ռուսթավելու անվան դրամատիկ շքանշանակիր թատրոնը, Օպերայի և բալետի շքանշանակիր թատրոնը: Այդ թատրոնների գաստրոլները Մոսկվայում (1937 թվին), վերածվեցին կուլտուրայի իսկական համամիութենական տոնի:

Ընդամենը Խորհրդային Վրաստանում կա 40 թատրոն։

Վրաստանի պոետներն ու գրողները հռչակվել են փայլելում ամբողջ Խորհրդային Միության մեջ. մեր երկիրը վրաց հանճարեղ պոետ Շոթա Ռուսթավելու ծննդյան 750-ամյակը նշեց որպես համաշխարհային կուլտուրայի մեծագույն տոն։ Վերածնվել է վրաց ժողովրդի կուլտուրան, ծաղկել են հիանալի տաղանդներ։

Վրաց ժողովուրդը փայլուն հաղթանակներ է ձեռք բերել։ Այդ հաղթանակները նա ձեռք է բերել ժողովրդի թշնամիների — ֆաշիզմի — տրոցկիստական — բուխարինական, մենշևիկյան, բուրժուա-նացիոնալիստական գործակալների, այդ ճիվաղների դեմ մղվող պայքարում, որոնց համար «պայքարը խորհրդային իշխանության դեմ դարձել է նրանց նպատակը. տեռորը, լրտեսությունը և դիվերսիան դարձել են պայքարի նրանց միջոցները, իսկ երկերեսանիությունը — նրանց հակահեղափոխական սաբոտաժնիկական վտանձգու-թյունների մեթոդն ու քողարկումը»[1]։

[1] Լ. Բերիա — «Պրավդա», 19 օգոստոսի, 1936 թ.։



Վրացական ԽՍՀ գլխավոր քաղաքներն են՝ Թբիլիսին — հնագույն գեղեցիկ քաղաքը Քուռ գետի ափին, հանրապետության մայրաքաղաքը, նրա կուլտուրական ու արդյունաբերական կենտրոնը. Գորին — կանաչազարդ, արևավառ քաղաք Քուռ գետի ափին, համաշխարհային հեղափոխության հանճար ընկեր Ստալինի ծննդավայրը. Քութայիսին — Արևմտյան Վրաստանի արդյունաբերական կենտրոնը. Բաթումին — խոշորագույն նավահանգիստ Սև ծովի ափին, Աջարական ԱԽՍՀ կենտրոնը. Սուխումին — խոշոր կուրորտային քաղաք, Աբխազական ԱԽՍՀ կենտրոնը. Ստալինիր — Հարավ-Օսեթական ավտոնոմ մարզի կենտրոնը։

Վրաց կուլտուրական, ուրախ, տաղանդավոր, երջանիկ ժողովուրդը ծավալել է իր բոլոր ձիրքերը, արթնացրել է երկրի արտադրողական ուժերը։ Հիասքանչ Վրաստանի հարստությունները օգտագործվում են ի բարօրություն նրա ժողովուրդների, ի բարօրություն ամբողջ Խորհուրդների երկրի։

«Վրաց ժողովուրդը շատ բան է տվել ոչ միայն իր երկրին, այլև ամբողջ Խորհրդա-

յին Միությունը, վորը պատվավոր տեղ է գրավում մարդկության պատմության մեջ: Բավական է ասել, վոր Վրաստանը մեզ տըվել է ընկեր Ստալինին»[2]):

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Հայկական ԽՍՀ-ն գտնվում է Անդրկովկասի հարավային մասում, Թյուրքիայի և Իրանի սահմանի վրա: Հայաստանը լեռնոտ յերկիր է, բավական չոր կլիմայով: Հողագործությունը շատ տեղերում պահանջում է արհեստական վոռոգում:

Հայաստանի տերիտորիան 30 հազար քառակուսի կիլոմետր է: Նրա բնակչությունը բաղկացած է հայերից, վորոնք կազմում են 84,7 տոկոսը, ադրբեջանցիներից՝ 8,2 տոկոսը, ռուսներից, վրացիներից, քրդերից, իրանցիներից և այլն:

## ՑԱՐԻԶՄԻՆ ՀԱՐԿԱՎՈՐ ԵՐ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՌԱՆՑ ՀԱՅԵՐԻ

Հայ ժողովուրդն իր պատմության ընթացքում շատ տառապանքներ է կրել: Շատ

2) Վ. Մ. Մոլոտով— ԽՍՀՄ-ի ժողովուրդների մեծ բարեկամությունը. եջ՝ 59, Կուսհրատ, 1936 թ.



վիշտ է տարել նա 19—20-րդ դարերում, յերբ Հայաստանը բաժանված եր ցարական Ռուսաստանի և Թյուրքիայի միջև: Թե՛ ռուսական ցարը, թե՛ թյուրքական սուլթանը անողոքաբար ճնշում եյին հայ ժողովրդին: Ցարիզմի քաղաքականությունը Հայաստանի վերաբերմամբ կարճ ու վորոշակի, անամոթ կերպով արտահայտել է ցարական արտաքին գործերի մինիստր Լոբանով— Ռոստովսկին՝ «Մեզ հարկավոր է Հայաստան առանց հայերի»:

Հայկական պատմության մեջ ամենատխուր եջերից մեկը դրեցին դաշնակները, վորոնք Ռուսաստանում տեղի ունեցած Հոկտեմբերյան Սոցիալիստական հեղափոխությունից հետո գրավեցին իշխանությունը Հայաստանում:

Դաշնակների համարյա յերամյա տիրապետության շրջանում յերկրի բնակչության մոտ յերրորդ մասը մեռավ սովից, համաճարակներից ու պատերազմներից: Յերկիրը գտնվում եր վերջնական կործանման յեզրին:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

1920 թվի նոյեմբերին Հայաստանի աշ-

խատավորները Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի յեղբայրական օգնությամբ տապալեցին դաշնակցական կառավարությունը և հաստատեցին Խորհրդային իշխանություն:
Խորհրդային իշխանությունը հաստատեց ազգային խաղաղություն, վերածնեց բազմաչարչար Հայաստանը: 50 հազար վտարանդիներ, որոնք առաջ ստիպված էին յեղել հեռանալ հայրենիքից, կարողացան վերադառնալ իրենց վերածնված յերկիրը: Հայաստանի բնակչությունն արագ թափով աճում է: Սարն ի վեր գնաց Հայաստանի ժողովրդական տնտեսությունը:

Խոշոր արդյունաբերության արտադրանքը 1936 թվին՝ 1913 թվի համեմատությամբ աճել էր 12 անգամ:

Վերակառուցվել են Ալավերդու և Զանգեզուրի հին պղնձաձուլական գործարանները: Ստեղծված է քիմիական արդյունաբերություն՝ Ալավերդում, Կիրովականում, Յերևանում: Ավարտվում է Սինթետիկ կաուչուկի խոշոր գործարանի կառուցումը Յերևանում: Ստեղծված է տեքստիլ արդյունաբերություն՝ Լենինականում: Կառուցված են կոնսերվի գործարաններ, կա-



ռուցված է Լենինականի մսի կոմբինատը և կառուցվում են սննդարդյունաբերության այլ ձեռնարկություններ:

Մշակվում են շինանյութերի հանքավայրերը (Արթիկի տուֆը, մարմարը, պեմզան): Աշխատում է Ձորագեսի էլեկտրոկայանը:

Հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար մեծ խթան կհանդիսանա բարձրադիր Սևանա լճի էներգիայի օգտագործումը: Սևանա լճի ջրերն էներգիա կտան այդ լճից սկիզբն առնելով Զանգու գետի հոսանքի ուղղությամբ մեկը մյուսի մոտ կառուցվելիք 8 հիդրոկայաններին: Այդ հիդրոկայանները կկազմեն այսպես կոչված՝ Սևանի կասկադը: Սևանի կասկադի առաջին խոշոր հիդրոկայանը— Քանաքեռի հիդրոկայանը (Յերևանի մոտ) արդեն գործում է: Կառուցվում է կասկադի ամենամեծ կայանը— Գյումուշի էլեկտրոկայանը: Կասկադի բոլոր կայանների ընդհանուր կարողությունը կգերազանցի Դնեպրոգեսի կարողությունից:

Նոր հիդրոկայանները էներգիա կտան արդյունաբերությանը և կվուռդեն նոր տաս-

յին Միությունը, վորը պատվավոր տեղ է գրավում մարդկության պատմության մեջ: Բավական է ասել, վոր Վրաստանը մեզ տըվել է ընկեր Ստալինին»[2]):

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Հայկական ԽՍՀ-ն գտնվում է Անդրկովկասի հարավային մասում, Թյուրքիայի և Իրանի սահմանի վրա: Հայաստանը լեռնոտ յերկիր է, բավական չոր կլիմայով: Հողագործությունը շատ տեղերում պահանջում է արհեստական վոռոգում:

Հայաստանի տերիտորիան 30 հազար քառակուսի կիլոմետր է: Նրա բնակչությունը բաղկացած է հայերից, վորոնք կազմում են 84,7 տոկոսը, ադրբեջանցիներից՝ 8,2 տոկոսը, ռուսներից, վրացիներից, քրդերից, իրանցիներից և այլն:

## ՑԱՐԻԶՄԻՆ ՀԱՐԿԱՎՈՐ ԵՐ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՌԱՆՑ ՀԱՅԵՐԻ

Հայ ժողովուրդն իր պատմության ընթացքում շատ տառապանքներ է կրել: Շատ

[2]) Վ. Մ. Մոլոտով— ԽՍՀՄ-ի ժողովուրդների մեծ բարեկամությունը. եջ՝ 59, Կուսհրատ, 1936 թ.



վիշտ է տարել նա 19—20-րդ դարերում, յերբ Հայաստանը բաժանված եր ցարական Ռուսաստանի և Թյուրքիայի միջև: Թե՛ ռուսական ցարը, թե՛ թյուրքական սուլթանները անողորմաբար ճնշում եյին հայ ժողովրդին: Ցարիզմի քաղաքականությունը Հայաստանի վերաբերմամբ կարճ ու վորոշակի, անամոթ կերպով արտահայտել է ցարական արտաքին գործերի մինիստր Լոբանով— Ռոստովսկին՝ «Մեզ հարկավոր է Հայաստան առանց հայերի»:

Հայկական պատմության մեջ ամենաարյունոտ եջերից մեկը գրեցին դաշնակները, վորոնք Ռուսաստանում տեղի ունեցած Հոկտեմբերյան Սոցիալիստական հեղափոխությունից հետո գրավեցին իշխանությունը Հայաստանում:

Դաշնակների համարյա յերեքամյա տիրապետության շրջանում յերկրի բնակչության մոտ յերրորդ մասը մեռավ սովից, համաճարակներից ու պատերազմներից: Յերկիրը գտնվում եր վերջնական կործանման յեզրին:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

1920 թվի նոյեմբերին Հայաստանի աշ-

խատավորները Բանվորա- Գյուղացիական Կարմիր Բանակի յեղբայրական օգնությամբ տապալեցին դաշնակցական կառավարությունը և հաստատեցին Խորհրդային իշխանություն:

Խորհրդային իշխանությունը հաստատեց ազգային խաղաղություն, վերածնեց բազմաչարչար Հայաստանը: 50 հազար վտարանդիներ, որոնք առաջ ստիպված եյին թողել հեռանալ հայրենիքից, կարողացան վերադառնալ իրենց վերածնված յերկիրը: Հայաստանի բնակչությունն արագ թափով աճում է: Սարն ի վեր գնաց Հայաստանի ժողովրդական տնտեսությունը:

Խոշոր արդյունաբերության արտադրանքը 1936 թվին՝ 1913 թվի համեմատությամբ աճել եր 12 անգամ:

Վերականգնվել են Ալավերդու և Զանգեզուրի հին պղնձաձուլական գործարանները: Ստեղծված է քիմիական արդյունաբերություն՝ Ալավերդում, Կիրովականում, Յերևանում: Ավարտվում է Սինթետիկ կաուչուկի խոշոր գործարանի կառուցումը Յերևանում: Ստեղծված է տեքստիլ արդյունաբերություն՝ Լենինականում: Կառուցված են կոնսերվի գործարաններ, կա-



ռուցված է Լենինականի մսի կոմբինատը և կառուցվում են սննդարդյունաբերության այլ ձեռնարկություններ:

Մշակվում են շինանյութերի հանքավայրերը (Արթիկի տուֆը, մարմարը, պեմզան): Աշխատում է Ձորագեսի ելեկտրոկայանը:

Հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար մեծ խնդիր կհանդիսանա բարձրադիր Սևանա լճի ենեռգիայի օգտագործումը: Սևանա լճի ջրերն ենեռգիա կտան այդ լճից սկիզբն առնելով Զանգու գետի հոսանքի ուղղությամբ մեկը մյուսի մոտ կառուցվելիք 8 հիդրոկայաններին: Այդ հիդրոկայանները կկազմեն այսպես կոչված՝ Սևանի կասկադը: Սևանի կասկադի առաջին խոշոր հիդրոկայանը— Քանաքեռի հիդրոկայանը (Յերևանի մոտ) արդեն գործում է: Կառուցվում է կասկադի ամենամեծ կայանը— Գյումուշի ելեկտրոկայանը: Կասկադի բոլոր կայանների ընդհանուր կարողությունը կգերազանցի Դնեպրոգեսի կարողությունից:

Նոր հիդրոկայանները ենեռգիա կտան արդյունաբերությանը և կոռոգեն նոր տաս-

նյակ հազարավոր հեկտար արգավանդ հողեր։

1920—1936 թվականների ընթացքում ոռոգվող հողերի տարածությունը Հայաստանում 62 հազար հեկտարից հասել ե մինչև 154 հազար հեկտարի։

Անճանաչելի յե դարձել գյուղատնտեսությունը։ Կոլեկտիվացմամբ ընդգրկված են բոլոր տնտեսությունների 90 տոկոսը։ Դեռ 1925 թվին, յուրաքանչյուր հազար տնտեսությանը Հայաստանում ընկնում եր 24 յերկաթե գութան, 109 տեղական արոր, 13 ձի և 284 յեզ ու գոմեշ։ Այժմ կոլտնտեսային դաշտերում աշխատում են 1357 տրակտոր, 132 կոմբայն և հազարավոր այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Աճում ե կոլտնտեսականների բարեկեցությունն ու ունևորությունը։ Կոլտնտեսականները կառուցում են հազարավոր նոր, լուսավոր բնակարաններ։ Տասնյակ գյուղեր լուսավորվում են տեղական ու շրջանային ելեկտրոկայանների լույսով։

Հայաստանում ցանում են ցորեն, գարի, իսկ տեխնիկական կուլտուրաներից— բամբակ, ծխախոտ, շաքարի ճակնդեղ, գանդրաֆուշ։ Մշակում են խաղողի և պտղատու



այգիներ։ Լեռնային մարգագետիններում զարգացած ե անասնապահությունը, գլխավորապես վոչխարաբուծությունը։

Նախահեղափոխական Հայաստանում բնակչության $3/4$ մասն անգրագետ եր։ Խորհրդային Հայաստանում իրականացված ե ընդհանուր ուսումը։ Միջնակարգ դպրոցի աշակերտների թիվը՝ նախահեղափոխականի համեմատությամբ աճել ե 68 անգամ։ ԲՈՒՀ-երում սովորում են հազարավոր ուսանողներ։ Հայաստանում ստեղծված են 67 գիտա-հետազոտական հիմնարկ, այդ թվում՝ ԽՍՀՄ-ի Գիտությունների Ակադեմիայի բաժանմունքը։ Հայերեն լեզվով հրատարակվում ե 55 թերթ, (մինչ խորհրդային Հայաստանում հրատարակվում եր հայկական 8 թերթ)։ 1914 թվին Հայաստանում չկար վոչ մի թատրոն, այժմ Հայաստանն ունի 20 թատրոն։

Յերևանը, հանրապետության մայրաքաղաքը, առաջ փոքրիկ հետամնաց քաղաք եր։ Դաշնակների տիրապետության որոք Յերևանը վերջնականապես ավերվեց։ Այժմ, Յերևանը դարձել ե խոշոր, կուլտուրական ու արդյունաբերական կենտրոն։

Տրոցկիստական-բուխարինական և դաշ-

Դաշնակցական լրտեսներն ու վնասարարները փորձում էին ավերել հայ ժողովրդի տընտեսությունն ու կուլտուրան, վերականգնել ազգային յերկպառակությունը և վոչնչացնել աշխատավոր ժողովրդի հերոսական աշխատանքի պտուղները: Թշնամիները սխալվեցին իրենց հաշիվների մեջ: Նրանք մերկացված են և ջախջախված:

Հայ ժողովուրդն անսասան կանգնած է Հոկտեմբերյան Սոցիալիստական Հեղափոխության նվաճումների պաշտպանության դիրքում:

Спутник Агитатора
№ 8 — 1938 г.





Հայկական ԽՍՀ. ԿԳԿ. հրատարակչություն—
«Խորհրդ. Հայաստան»

---

ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . 3 »
3 » . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։